Տէր եւ Տիկին Խաչիկ Կիւլպոլեան եւ զաւակը Սեդա ,Տէր եւ Տիկին Օննիկ Իսկէնտէրեան եւ զաւակը Վարդգէս, Այրի Տիկին Գլանչառ եւ զաւակները Սոնյա եւ Ժոզէֆ, Տէր եւ Տիկին Յակոբ Կղերունի եւ զաւակները , Տէր եւ Տիկին Զաւէն Տոլտուրեան եւ զաւակները (Պոլիս), սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն իրենց մօր, մեծ մօր, քրոջ եւ ազգականին՝

Այրի Տիկ. ՏԻԳՐԱՆՈՒՀԻ ՄԵՍՐՈՊԵԱՆԻ

(Ծնեալ Պիպէռեան)

մահը։ Յուղարկաւորութիւնը տեղի պիտի ունենայ այս Շաբաթ, Հոկտեմբեր 4, ժամը 10.45ին Փարիզի Հայոց եկեղեցին, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Իվրիի գերեզմանատունը ։

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել ։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Գրիգորեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ այս Կիրակի առաւօտ, Փրատոյի Մայր – Եկեղեցիին մէջ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի՝

ԿԱՐԱՊԵՏ ԳՐԻԳՈՐԵԱՆԻ

յիշատակին։

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները ։

×

Տէր եւ Տիկին Յովհաննէս Գոճապըյըքեան եւ զաւակները՝ Գրիգոր եւ Հոփփոփմէ եւ ազգականները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցիին մէջ իրենց եղբօր, հօրեղբօր եւ ազգականին՝

ՊԵՏՐՈՍ ԳՈՃԱՊԸՅԸՔԵԱՆԻ

(Լասիօթաթնակ)

մահուան քառասունքին առթիւ։

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգող բարեկամները ։

## ԿԱՐՄԻՐ ԽԱՉ

Հայ Կարմիր Խաչի Ֆէօանվիլիէի օգնութեան կայանին ընդարձակման ի նպաստ կը նուիրեն.— Բարեւէր ումն հինգ հազար Ֆր., Պ. Ալիքսանեան երկու հազար, Տէր եւ Տիկին Խասեան (Ալֆորվիլ), Տիկին Խաբրութեան, Տէր եւ Տիկին Բալուճեան, Պ. Յակոբեան հազարական, Պ. Գայսէրլեան հինգ հարիւր ֆրանք ։

×

Տէր եւ Տիկին Ժիրայր Մելքոն կը նուիրեն երկու հազար ֆրանք Հայ Կարմիր Խաչի Ֆէօանվիլիէի օգափոխութեան կայանի ընդարձակման ի նպաստ, իրենց անդրանիկ զաւակին Յակոբի – Ժան Լիւք ծննդեան առթիւ ։

Հայ Կարմիր Խաչի Փարիզի գարմանատան կը նուիրեն.— Պ. Պ. Քիրազեան 500 ֆրանք, Խասեան հազար, Գույմարեան հինգ հարիւր, Պօղոսեան երեք հարիւր ։

Հայ Կարմիր Խաչի անտէր հիւանդներու ֆոնտին կը նուիրեն.— Տիկին Զէրչեան երեք հարիւր ֆրանք, Պ. Պ. Մուրատեան, Պաքալեան, Շմաւոնեան, Սաատէթեան հինգ հարիւրական ֆրանք ։



Imprimé sur les presses du Journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուէրները .— Լիոնի եկեղեցւոյ շինութեան.— Պ. Գառնիկ Քիլարճեանի ձեռամբ քսան հազար ֆրանք, Փոն տը Շէրիւի, Պ. Յովհ. Յովհաննէսեանի ամուսնութեան առթիւ հետեւեալ ապաշխանքներու նուէրներէն Պ. Պ. Կարապետ Մանուկեանէ հինգ հազար ֆրանք, Ալէքսան Կոստանեանէ երկու հազար, Կարապետ Յովհաննէսեանէ երկու հազար, Սարգիս Յովհաննէսեանէ, Մարգարեանէ, Մանուէլ Գափիկեանէ, Հրանդ Ճալլոյեանէ, Տիկին Թումաեանէ, Պոլտոյեանէ, Տիրան Վարդանեանէ, Տիգրան Կոստանեանէ, Կօշկակարեանէ, Պօյաճեանէ, Գոթոյեանէ հազարական ֆրանք , Պելֆորէն Պ. Գրիգոր Սէվտալեանէ հազար ֆրանք ։

## ԹԷՅԱՍԵՂԱՆ

Ֆ. Կապ. Խաչի Մարսէյլի մասնաճիւղի վարչութիւնը մասնակցութեամբ շրջանային վարչութեան . թէյասեղան մը կազմակերպած է Տէր եւ Տիկին Խանճեանի Ամերիկա մեկնումին առթիւ ։

Կիրակի (Հոկտեմբեր 5) երեկոյեան ժամը 8ին, Քաֆէ Նոայի մէջ ։

Կը հրաւիրուին բոլոր մասնաճիւղերը եւ բարեկամները ։



## ԾՆՈՒՆԴ

Տէր եւ Տիկին Գափիկեան եւ Տէր եւ Տիկին Մեսրոպ Տէր Գրիգորեան կը ծանուցանեն ծնունդը իրենց աղջկան եւ թոռնուհիին՝ ԱՍՏՂԻԿԻ ։

1958, Սեպտ. 25, Անիէռ

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Կրօն. Ընկերակցութիւնը կը ծանուցանէ որ այս Կիրակի, Ամենայն Հայոց Կաթողիկոս Վազգէն Ա.ի օծման երրորդ տարեդարձին առթիւ կը մատուցուի հանդիսաւոր պատարագ եւ Հայրապետական օրհնութիւն։ Բարեպաշտ ժողովուրդը կը հրաւիրուի մասնակցիլ այս արարողութիւններուն ։

×

Կրօն. Ընկերակցութիւնը կը ծանուցանէ որ իր հաստատած հայերէն լեզուի դասաւանդութիւնները սկսած են Հոկտեմբեր երեքին, ուսուցչուհի Տ. Ա. Թորոսեանի առաջնորդութեանը տակ, կանոնաւորապէս ամէն Երեքշաբթի եւ Ուրբաթ օրեր, իրիկուան ժամը 7էն 9, Բարեգործական Միութեան (19ա, Րիւ Վանթիւր)ի սրահին մէջ։ Ծնողները կը հրաւիրուին արձանագրել իրենց երախաները եկեղեցւոյ քարտուղարութեան մօտ՝ ինչպէս նաեւ դասի օրերուն, տեղւոյն վրայ ։



## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. « Ռոստոմ » խումբի ժողովը այս Կիրակի առաւօտ ժամը 9.30ին Փլաս տէ Ֆէթ Արթիւրին ճաշարանը։ Կարեւոր օրակարգ ։

ՇԱՒԻԼ.— Հ. Յ. Դ. «Արղութեան» խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 21–ին, սովորական հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ ։

Ֆ. Կ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի վարչութեան ժողովը Շաբաթ կէսօրէ վերջ, ժամը հինգին Մշակոյթի Տան սրահը (17 Րիւ Պլէօ)։

ՀԱՄԱԽԱՐՀ. Հայր. Միութեան Մարսէյլի մասնաճիւղի ընդհ. անդամական ժողովը այս Կիրակի առաւօտ ժամը 9ին։ 7 Պուլվ. տ'Անթէն, Պար տը Կլոպի սրահը։ Օրակարգ.— Ա) Պատգ. ժողովի զեկուցում, Բ) Հաշուետուութիւն, Գ) Վարչութեան ընտրութիւն, Դ) Զանազանք ։ Մասնաճիւղիս բոլոր անդամներու ներկայութիւնը անհրաժեշտ է ։

## ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳ

Այս Կիրակի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ կը պատարագէ եւ կը քարոզէ Բարգէն Վրդ. Ապաճեան ։

Օր. ԿԱԼԻՓՍԻ ՋԷՔԻԵԱՆ
Պ. ԳԷՈՐԳ ԷՔԻՆՃԵԱՆ
Ամուսնացած
5 Հոկտեմբեր, 1958, Լիոն

Այս առթիւ Փողհարեան եւ Ջէքիեան ընտանիքները կը նուիրեն.—Հինգ հազար ֆրանք Փարիզի Հայ Մշակութային Տան, հինգ հազար ֆրանք Լիոնի Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղին, երեք հազար Ֆր. «Յառաջ»ի բարգաւաճման համար, երեք հազար Ֆր. Լիոնի Նոր Սերունդի «Միամանթօ» խումբին :

## ՆՈՒԷՐ

Մէջտոնէն Տիկին Եպրաքսի Մանուկեան իր ամուսնոյն այսաքինման համար փոխան ծաղկեպսակի կը նուիրէ երկու հազար ֆրանք, Իսիի Խրիմեան դպրոցին, հազար Ֆր. «Յառաջ»ի տարածման, հազար Ֆր. Մշակոյթի Տան, եւ հազար Ֆր. ալ ծերանոցներուն համար: (Ստանալ «Յառաջ»էն, բացի Խրիմեան դպրոցի նուէրէն):

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Կ. Տէօնէքեան հրապարակաւ շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր կազմակերպութիւններուն, ընտանիքներուն եւ անհատներուն որոնք ծաղկեփունջերով, հեռագիրներով եւ նամակներով շնորհաւորեցին Սոնայի (Անանեան) եւ Սարգիս Տէօնէքեանի ամուսնութիւնը :

Այս ուրախ առթիւ Տէր եւ Տիկին Կ. Հալաճեան (կնքահայր) չորս հազար Ֆր. կը նուիրէ Մշակոյթի Տան Շ. Միսաքեան սրահին: Ամն հինգ հազար Ֆր. Կապոյտ Խաչի Գորտոյի մասնաճիւղին : Սահակ Խանդէտեան հազար եւ Կ. Տէօնէքեան 15 հազար Մշակոյթի տան Շ. Միսաքեան սրահին :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Ֆրանսայի Հայ Կաթողիկէ Համայնքը կը մասնակցի ամբողջ քրիստոնեայ աշխարհի սուգին հոգեհանգստեան պաշտօնով մը վասն հոգւոյ

### Ն. Ս. ՊԻՈՍ ԺԲ.

ԵՐՋԱՆԿԱՅԻՇԱՏԱԿ ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏԻ

Զոր պիտի մատուցանէ
ԳԵՐԱՊԱՏԻՒ Հ. Կ. Ծ. Վ. ԱՄԱՏՈՒՆԻ

Այս Կիրակի, ժամը 10.30ին, Ս. Խաչ եկեղեցին, 10պիս, Րիւ Թուէն, Փարիզ (5): Ներկայ իրրեւ հրաւէր կը նկատուի:

×

### ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Կիրակի օր, ժամը տասնին, Մարսիլիոյ Հայ Կաթողիկէ եկեղեցւոյն մէջ հանդիսաւոր ճայնաւոր Ս. պատարագ պիտի մատուցուի ու յաւարտ պատարագի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի
ՊԻՈՍ ԺԲ.

Սրբազան քահանայապետին հոգւոյն յաւիտենական հանգստեան համար:

Կը հրաւիրուի բարեպաշտ ժողովուրդը:

×

Փարիզի Հաճնոյ Հայր. Միութեան նախաձեռնութեամբ, Հաճնոյ հերոսամարտի 38րդ տարեդարձի առթիւ ութ հազար դիւցազներու ննջեցելոց, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Փարիզի Հայոց Ս. Յ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, այս Կիրակի առաւօտ :

Կը հրաւիրուին հայրենակիցները եւ անոնց յիշատակը յարգողները, յետ պատարագի մատաղ Ազգային տան մէջ :

## ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Պանեէօ Քաջանի մասնաճիւղին կողմէ :

Այս Կիրակի 19 Հոկտեմբեր, ժամը 17-կէս գիշեր: Ազգ. Տան մէջ, 32 րիւ տը Թրէվիզ :

## ՊԱՏԱՐԱԳ

Տէսինի Կրօն. Ընկերակցութիւնս, կը փութայ ծանուցանել Տէսինահայ հասարակութեան թէ, այս կիրակի առաւօտ ժամը 8.30ին : Ս. պատարագ պիտի մատուցուի տեղւոյս Ս. Աստուածածնայ Եկեղեցւոյ մէջ Ամենայն Հայոց Հայրապետի Վազգէն Ա. Կաթողիկոսի ծննդեան յիսունհերորդ եւ գահակալութեան Գ. տարեդարձի առթիւ:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Անի կոմիտէի ընդհ. ընկերական ժողովը այս շաբաթ ժամը 20.30ին, Օհանջանեան ակումբին մէջ : Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է անխտիր, անդամատետրերը միասին բերել :

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. Զաւարեան կոմիտէի ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ :

ՇԱՒԻԼ.— Հ. Յ. Դ. «Արդութեան» խումբի ժողովը այս Շաբաթ իրիկուն, ընկեր Մ. Տէմիրճեանի բնակարանը : Խիստ կարեւոր օրակարգ :

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Վալանսի Շրջ. կոմիտէի ընդհ. ժողովը, այս Շաբաթ, ժամը 20.30ին, Ահարոնեան ակումբը: Կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է :

Ֆ. Կ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս Շաբաթ կէսօրէ վերջ ժամը չորսին, Բաժակ մը Թէյի շուրջ՝ Գ. Սասունիի ճաշարանը, րիւ տ'Ալէք-սանտրի, մէթրօ Սանթիէ կամ Ս. Տընի : Օրակարգ՝ Պարահանդէսի կարգադրութիւններ եւ ուրիշ կարեւոր հարցեր :

Ոչ ոքի հրաւիրագիր չի ղրկուիր:
Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :

ՀԱՄԱԽՄԲ. Հայր. Միութեան Վալանսի մասնաճիւղը ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Շաբաթ երեկոյ Գ. Գ. Սիմոնեանի սրճարանը : Օրակարգ.— Ա) Պատգամ. ժողովի տեղեկագրի ընթերցում, Բ) Հաշուետուութիւն, Գ) Նոր վարչութեան ընտրութիւն: Կը հրաւիրուին բոլոր հայրենակիցները :













Imprimé sur les presses du journal HARATCH
—— 17, Rue Bleue, 17 — PARIS (9e) ——

արդէն Պիոս ԺԱ.ի ժամանակէն մեծապէս գնահատուած է պապական շրջանակէն: 63 տարեկան է եւ ծնած արեւելք, ագգի մը մէջ որ գրեթէ երբեք իր տեղը չէ ունեցած աշխարհագրական քարտէսին վը-րայ: Այս պարագան նաեւ զինքը կը ձեր-բազատէ այն ծանրակշիռ անտիֆափէն զոր պիտի ունենար եթէ պատկանէր քա-ղաքական գերիշխան պետութեան մը, անտիֆափ մը զոր կարդինալ Սփելման ունի: Զափազանց համեստ, խորապէս բարեպաշտ, կը խօսի բազմաթիւ լեզու-ներ եւ Հռոմ եկած է 11 տարեկանին: Կարդինալ Աղաջանեան արագ վերելք մը ունեցած է, շատ ճամբորդած է, մաս-նակցած է Արեւելեան Կանոնական Օրէն-քի Ցանձնախումբին աշխատանքներուն, կարդինալի աստիճան առացած է 1946ին, ապա յաջորդած է կարդինալ Սթրիխի իբրեւ պետ Հաւատոյ Տարածման Միա-բանութեան — այս նշանակումին մէջ կարելի է տեսնել թելադրանք մը Պիոս ԺԲ.ի կողմէ — փառաւոր մարդ՝ որ կը նմանի Վենետիկեան հին ծերակուտակա-նի մը, կարդինալ Աղաջանեան կրնայ ըլ-լալ Պապ մը՝ որ առաջնորդէ Եկեղե-ցին դէպի լայնածաւալ եւ քաջ գործու-նէութիւն մը, թէ քաղաքական եւ թէ միսիոնարական գետնի վրայ:

× «Ֆրանս – Սուար» կը հրատարակէ 19 պապընտրելի կարդինալներու նկար-ները, առանց կարգին առաջինը՝ կարդի-նալ Աղաջանեան (այբուբենական կարգով դրուած չեն) չնշելով թէ.— Տիրանա-ւորը կշռուած, բարեպաշտ, զարգացած է: Եթէ նոյնիսկ Վատիկանի մէջ արեւելեան պատրիարքի մը ձեւը ունի, Հռոմէացի-ները շատոնց վարժուած են իր ձօրուքին:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

**ՓԱՔԻՍՏԱՆԻ** մէջ պատերազմական վի-ճակը ի զօրու պիտի ըլլայ այնքան ա-ռեն որ չեն իրականացած նոր կառավա-րութեան նպատակները, յայտարարեց զօր. Այյուպ Խան:

**ԱՐԱԲԱԿԱՆ ՄԻԱՑ. ՀԱՆՐԱՊԵՏՈՒ-ԹԵԱՆ** փոխ նախագահ մառեշալ Ամէր, որ Զեխոսլովաքիայէն նոր վերադարձած էր Գահիրէ, խորհրդային կառավարու-թեան պաշտօնական հրաւէրով մեկնեցաւ Մոսկուա:

**ԱՆԳԱՐԱՅԻ** բոլոր դպրոցները փակ-ուեցան ղումի (կոխի) համաճարակի մը պատճառով:

**ՀԻՒՍ. ԾՈՎՈՒՆ** մէջ խորհրդային բեռ-նատար նաւ մը ընկղմած է. օգնութեան հասնող նաւ մը յաջողած է փրկել երեք նաւաղներու կեանքը, բայց 22 ուրիշներ խեղդամահ եղած են: Միւս կողմէ, Հո-նոլուլու կղզիին մօտերը (Ճափոն) ձկնոր-սական երկու նաւեր եւ բեռնանաւ մը փոթորիկի բռնուելով ընկղմած են, 23 նաւաղներ կորսուած են:

**ՍԻՆԿԱՓՈՒՐԷՆ** կը հաղորդեն թէ 23 տարեկան չինացի մը՝ Լի Հոնկ-Մէնկ ողջ-ողջ այրուած է, հետաքրքիրներու աչքերուն առջեւ. ոչ ոք փորձած է միջա-մտել. ոստիկանութիւնը քննութիւն մը բացած է այս ողբերգութեան պատճառ-ները գտնելու համար:

---

Այրի Տիկին Վարդուհի Դերձակեան, Գ. Մանուկ Դերձակեան, Տէր եւ Տիկին Աքրիպաս Սարգիսեան եւ զաւակները, Այրի Տիկին Ազաւնի Տրդատեան եւ զա-ւակները (Ամերիկա), Այրի Տիկին Նու-րիցա Կարապետեան եւ զաւակները (Ա-մերիկա), Տէր եւ Տիկին Կարապետ Փա-փազեան (Պուլկարիա), Գ. Վաղարշակ Նազարէթեան եւ զաւակները (Պուլկա-րիա), Տէր եւ Տիկին Նուպար Սիմոնեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Ծնունդ Սէփէթճեան եւ զաւակները, Այրի Տիկին Մարգրիտ Սիմոնեան, Օր. Վիքթորիա Գրիգորեան (Իրաք), սրտի խոր կսկիծով կը ծանուցանեն կսկծալի մահը իրենց ա-մուսնոյն, հօր, աներհօր եւ ազգականին՝

ՄԿՐՏԻՉ ԴԵՐՁԱԿԵԱՆԻ

որ տեղի ունեցաւ 15 Հոկտեմբեր, Չո-րեքշաբթի երեկոյեան ժամը 11ին, 71 տարեկանին մէջ:

Յուղարկաւորութեան տխուր արարո-ղութիւնը տեղի ունեցաւ 17 Հոկտ. Ուր-բաթ կէսօրէ վերջ ժամը երեքին, Լիոնի Հայոց Եկեղեցւոյ մէջ (69, Րիւ Լուի Պը-լան), ուրկէ մարմինը փոխադրուեցաւ Կինոթիէրի գերեզմանատունը:

---

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Հ. Յ. Դ. «Րաֆֆի» խումբ 5000 Ֆր., Վարդգէս Տակառեան 15.000 ֆրանք,

Հ. Յ. Դ. «Րաֆֆի» խումբը կողբացմահը իր ընկերոջ, Տօքթ. Յովհաննէս Քիւթիւքճեանի ու ցաւակցութիւն կը յայտնէ, ընկերուհի Էլլէն Բիւզանդի ու ընտանեկան պարագաներուն ու փոխան ծաղկեպսակի վեց հազար ֆրանք կը նը-ւիրէ «Մշակոյթի Տան»:

×

### ՆՈՒԷՐ

Նիւէն Տէր եւ Տիկին Առաքելեան երկու հազար ֆրանք կը նուիրեն Հայ Մշակոյ-թի Տան, փոխան ծաղկեպսակի ողբացեալ երիցուհի Արմենուհի Տէր Արսէնեանի մահուան առթիւ: (Ստանալ Ցառաջէն):

---

ՈՒՇԱԴՐՈՒԹԻ՜ՒՆ

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ "ՕՐ"Ը

### ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

1 ՆՈՅԵՄԲԵՐ ՇԱԲԱԹ ԻՐԻԿՈՒՆ

ժամը 9էն մինչեւ առաւօտ Վեցերորդ թաղամասի քաղաքապետարա-նի շքեղ սրահներուն մէջ

×

Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐը Վիէնի մէջ, Տեղի պիտի ունենայ Նոյեմբեր 2ին, Կիրակի կէսօրէ վերջ: Մանրամասնու-թիւնները յաջորդով:

×

### ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

1 Նոյեմբեր, Շաբաթ իրիկուն, Քաղաքապետարանի թատրոնին մէջ

×

### ԼԻՈՆԻ ՄԷՋ

Նոյեմբեր 15ին, Շաբաթ իրիկուն ժա-մը 8.30ին, Ֆուայէ տը լ'Իմմաքիւլէի մէջ, 24 րիւ Տիւնուար:

Մանրամասնութիւնները յաջորդով:

---

### ՈՐԲԵՐՈՒ ՕԳՆՈՒԹԵԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ

(Փարիզահայ Տիկնանց Միութիւն)

ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Նոյեմբեր 29ին

---

### ԼԻՍԷ ՔՈՆՏՈՐՍԷի ՄԷՋ, ՉՐԻ

Դասընթացք հայերէնի եւ այլ ճիւղերու: Ասօսիասիօն փլիօթէքնիք, ճանչցուած իբրեւ ազգօգուտ ձեռնարկ, իր ուսուց-ման ծրագրին մէջ տեղ կուտայ հայերէնի դասաւանդութեան: Կ'ուսուցուին՝ լեզու, գրականութիւն, պատմութիւն, աշխար-հագրութիւն: Դասախօս նշանակուած է դրագէտ՝ Թ. ԳԱՌՆԻԿ որ կը ստանձնէ նաեւ մասնաւոր դասեր, բացի հայերէ-նի ճիւղէն, իտալերէնի եւ գերմաներէնի: Հայերէնի դասընթացքը սկսած է Հոկ-տեմբեր 15էն եւ կը շարունակուի ամէն չորեքշաբթի եւ ուրբաթ ժամը (19 – 21): Արձանագրութեան միանուագ ծախք տարեկան 700 ֆրանք, որ իրաւունք կու-տայ հետեւելու դասաւանդուած միւս ճիւղերուն, զանազան օտար լեզուներ, գիտութիւն, փիլիսոփայութիւն, ընկերա-յին նիւթեր եւն.: Փափաքողներուն ծրա-գիրը ձրի կը տրուի:

Դիմել՝

**Association Philotechnique**

**47, Rue Saint André des Arts**

(Մէթրօ Սէն Միշէլ կամ Օտէօն):

Հինգշաբթի եւ Շաբաթ 14 – 16, Եր-կուշաբթի 18-20, հեռաձայն Տանթօն 48-28, 44-14: Հայերէնի, իտալերէնի, գերմաներէնի դասերուն համար դիմել՝ Թ. Գառնիկեան, 8 րիւ Նօթր Տամ տը Լօռէթ՝

Որբունիի ճաշարանը, կամ՝ նոյն հաս-ցէին, Օր. Զ. Սրապեանի, Չորեքշաբթի եւ Ուրբաթ, ժամը 4 – 6:

---

ԴԱՄԱՍԿՈՍԷՆ Պէյրութ գացող օդանաւ մը կրակի բռնուած է Գալիլէի շրջանը, օդանաւորդը, շուէտացի, վիրաւորուած է։ Հոկտեմբեր 30ին Ամերիկացի վերջին զինուորը կը մեկնի Լիբանանէն։

ՖՐԱՆՍԻՑՈՒՆԱԿԱՆ առեւտրական դաշինք մը կնքուեցաւ որուն համաձայն Ֆրանսան 120.000 թոն կինի պիտի ներածէ Ցունաստանէն։

ԳԵՐՄԱՆԻՈՅ Արտ. նախարար՝ Ֆոն Պրէնթանօ յայտարարած է «Թայմզ»ի թղթակիցին թէ Պոնի կառավարութիւնը կը մտածէ դիւանագիտական յարաբերութիւններ հաստատել արեւելեան Եւրոպայի երկիրներուն հետ, բայց պիտի խուսափի որեւէ ձեռնարկէ որ կրնայ նկատուիլ իբրեւ ճանաչումը Արեւելեան Գերմանիոյ։

ՉՈՐՍ ՀԱՐԻՒՐ միլիոն ռուբլի օժանդակութիւն մը կուտայ Խ. Միութիւնը գնդ. Նասրի Ասուանի ամբարտակին շինութեան համար։ Այս լուրը յայտարարուեցաւ Խրուշչեւի խօսք բերնով մարեչալ Ամէրին ի պատիւ տրուած ընդունելութեան մը ժամանակ։ Ինչ որ այսօր Խրուշչեւ կուտայ Նասրի, մերժած է տալ Տըլըս 1956ին, առիթ տալով Նասրի որ ազգայնացնէ Սուէզի Ջրանցքը։

ՀՈՒՆԳԱՐԱԿԱՆ յեղափոխութեան նախօրեակին, Վիէննայէն կը հաղորդեն որ նոր ձերբակալութիւններ կատարուած են Հունգարիոյ մէջ։

Ձերբակալուած անձերը ամբաստանուած են իբրեւ «ֆաշիստ եւ կասկածելի»։ Այս տարեդարձին առթիւ Ամերիկայի ներկայացուցիչը ՄԱԿի մէջ՝ Քապոթ Լոճ յայտարարած է.— Հունգարիան եւ Խ. Միութեան միւս բոլոր արբանեակ երկիրները օր մը պիտի իրենք զիրենք ազատագրեն։ Անիկա կարելի է նախատեսել նոյն վստահութեամբ, որով կ'ըսենք թէ օրը կը յաջորդէ գիշերուան։

ՉԵԽՈՍԼՈՎԱՔԻՈՅ Հանրապետութեան քառասնամեակին առթիւ, Փրակայի համայնավար կուսակցութեան պաշտօնաթերթը կը դատապարտէ Մաօաբէքի քաղաքականութիւնը որ եղած է «հակաժողովրդական եւ հակա – ժողովրդական»։

ՄՈՐԻՍ ԺԸՆԸՎՈՒԱ ցմահ քարտուղար ընտրուեցաւ ֆրանսական ակադեմիայի, Ժորժ Լըքոնթի տեղ որ վերջերս մեռաւ։

ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՀԱՆԴԷՍ

Կրենոպլի Հ. Մ. Ը. Մ.ի տարեկան մեծ հանդէսը այս կիրակի ժամը 15էն մինչեւ մէկը, տեղւոյս հանրածանօթ Արմընօնվիլի մեծ սրահին մէջ։

Կը բանախօսէ Պ. ՄԻՍԱՔ ՄԻՐՋԷ։

ԼԻՈՆ
ՇՔԵՂ ՊԱՐՍՀԱՆԴԷՍ
ԵՒ ՔԸՐՄԷՍ

Լիոնի նորակառոյց Եկեղեցւոյ կից Ազգային Տան բացումը պիտի կատարուի, Լիոնի Եկեղեցական Երիտասարդաց կողմէ կազմակերպուած շքեղ քիրմէս եւ պարահանդէսով մը։

Բոլորը կը հրաւիրուին ներկայ ըլլալ, այս հաճելի օրը միասին անցնելու։

26 Հոկտեմբեր, ժամը 15էն մինչեւ կէս գիշեր։

Պիտի ըլլան՝ խաղեր, թօմպօլա, ճոխ պիւֆէ, պարեր։

**Vente de Charité.**

Մուտքը ազատ է։

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Այս Կիրակի, Գիւտ Խաչի տօնին առթիւ կը մատուցուի հանդիսաւոր Ս. պատարագ, որուն ընթացքին երգեհոնի ընկերակցութեամբ կ'երգուի օրուան յատուկ շարականը։ Տեղի կ'ունենայ նաեւ խաչահանգիստի անդաստանը՝ Ջրօրհնէքով։ Երգչախումբը կը ղեկավարէ Պ. Վ. Սարգսեան։



Imprimé sur les presses du Journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

## ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ

Ֆ. Կ. ԽԱՉԻ Գոմոնի մասնաճիւղի բոլոր անդամուհիները կը հրաւիրուին բացառիկ ընդհ. ժողովի Ս. Սահակ – Մեսրոպ սրահին մէջ, այս Երկուշաբթի օր, ժամը չորսին։ Օրակարգի վրայ կան շատ կարեւոր հարցեր։

## ԹԷՅԱՍԵՂԱՆ

Ֆ. Կապոյտ Խաչի Կեդր. վարչութեան կողմէ՝ պատիւ Տիկին Լօլա Սասունիի, Լիբանանի Հայ Օգն. Խաչի գործավարքարտուղար, որ Ամերիկա ներկայ եղած է Հ. Օ. Մ.ի պատգմ. ժողովին, այս շաբաթ ժամը 16ին Սասունիի յարկաբաժինը, Ռիւ տ'Ալէքսանտրի, մեթրօ Սանթիէ կամ Սէն Տընի։

Կը հրաւիրուին յատկապէս Փարիզի շրջանի մասնաճիւղերու անդամուհիները, լսելու համար ընկերուհիին հետաքրքրական զեկուցումը։

## ԱԼՖՈՐՎԻԼ

Այս Կիրակի Անմահն ԿՈՄԻՏԱՍԻ յիշատակին եւ եկեղեցւոյն մեծ բարերար ողբ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ՄԱՆԹԱՇԵԱՆի եւ ՄԱՆԹԱՇԵԱՆ գերդաստանի համայն ննջեցեալներուն համար պիտի մատուցուի հանդիսաւոր քառաձայն պատարագ եւ յետ պատարագի պիտի կատարուի հոգեհանգստեան պաշտօն։

Կը հրաւիրուի հասարակութիւնը։

×

Այս Կիրակի Գիւտ Խաչի տօնին առթիւ Ս. պատարագ Շաւիլի եկեղեցիին մէջ։ Յաւարտ պատարագի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի եկեղեցւոյ հիմնադիրներէն ողբացեալ ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ՖԸՉԸՃԵԱՆի մահուան տարելիցին առթիւ։ Հանգուցեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ այս արարողութեան։

×

ՎԻՌՈՖԼԷ.— Հայթայեան ընտանիքը կը ծանուցանէ թէ այս Կիրակի առաւօտ Շաւիլի եկեղեցիին մէջ հոգեհանգստեան պաշտօն կը կատարուի, Հայաստանի մէջ մեռած իրենց մօրեղբօր ՀՐԱՆՏ ՇԱՀԻՆԵԱՆի մահուան քառասունքին եւ իրենց մօր՝ ԱՑՐԻ ՏԻԿԻՆ ՄԱՐԻՑԱՅԻ մահուան տարելիցին առթիւ, ինչպէս նաեւ իրենց եղբօր ՔԵՐՈՎԲԷի եւ զաւակին ՀԱՅԿԱԶԻ յիշատակին։

Կը խնդրուի յիշեալներուն յիշատակը յարգողներէն ներկայ գտնուիլ սոյն արարողութեան։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՅՈՐԴԱՆԱՆԻ անգլիական ուժերուն պարպումը սկսաւ. առաջին օդանաւը Ամմանէն մեկնեցաւ Կիպրոս: Միւս կողմէ Լիբանանի ամերիկեան ուժերու պարպումը վերջացաւ, 1200 հոգի բաղկացած վերջին զօրամասը մեկնեցաւ Ուրբաթ օր:

ՀԱՄԱՑՆԱՎԱՐՆԵՐԸ սկսան ռմբակոծել Քեմոյ կղզին, ազգայնականները պատասխանեցին լռութեան դադարը խախտելով համայնավարներու պատկանող ռմբարձակ ութ կեդրոնները:

ԿԻՊՐՈՍԻ մէջ մահափորձեր կը շարունակուին. Նիկոսիոյ մէջ Անգլիացի մը սպաննուեցաւ երիտասարդ Յոյնի մը կողմէ. Յոյն մը սպաննուեցաւ եւ ուրիշ մը վիրաւորուեցաւ: Անգլիացի ութ զինուորներ վիրաւորուեցան:

ՔԱՆԱՏԱՅԻ մէջ հանքի արկած մը պատահեցաւ. 1500 մեթր խորութեան մէջ 172 հանքագործներ արգելափակուեցան պայթումի մը հետեւանքով. ազատարարները յաջողած են փրկել 78 հոգի: 55 ուրիշներ կորսուած կը նկատուին: Ցարդ երեք դիակ գտնուած են: Ազատարարները կը պայքարին 36 ուրիշներու կեանքը փրկելու համար:

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Տիկին Սաթենիկ Տէր Դաւիթեան եւ Ռուբէն Տէր Դաւիթեան չորս հազարական ֆրանք կը նուիրեն փոխան ծաղկեպսակի ողբացեալ Տօքթ. Յ. Քիւթիւֆեանի մահուան առթիւ Մշակոյթի Տան: (Ստանալ Յառաջէն):

× Տօքթ. Քիւթիւքեանի յուղարկաւորութեան ծաղկեպսակ մը ղրկած էր նաեւ Ֆ. Կապոյտ Խաչի Կեդր. Վարչութիւնը:

×

Տիկին Աղնիւ Գազազեան եւ զաւակները Տօքթ. Յովհ. Քիւթիւֆեանի մահուան առթիւ երեք հազար ֆրանք կը նուիրեն Հայ Մշակոյթի Տան Շ. Միսաքեան սրահին եւ երեք հազար ֆրանք Ֆ. Կ. Խաչի օգափոխութեան կայանին:



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ֆ. Կ. ԽԱՉԻ Գոմոնի մասնաճիւղի բոլոր անդամուհիները կը հրաւիրուին բացառիկ ընդհ. ժողովի Ս. Սահակ – Մեսրոպ սրահին մէջ, այս Երկուշաբթի օր, ժամը չորսին: Օրակարգի վրայ կան շատ կարեւոր հարցեր:

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Ընկեր Յակոբ Գապիկեան (Մարսէյլ) եւ ընտանիքը իրենց խորին ցաւակցութիւնը կը ներկայացնեն Այրի Տիկին Էլլէն Բիւզանդի եւ ընտանիքին Տօքթ. Յ. Քիւթիւֆեանի կսկծալի մահուան առթիւ:

×

Ֆ. Կ. Խաչի Սեւրանի մասնաճիւղին բոլոր ընկերուհիները եւ ընկերները իրենց խորին ցաւակցութիւնները կը յայտնեն ընկերուհի Տիկին Փառանձեմ Սանտիկեանին մահուան առթիւ իր ամուսնոյն ընկ. Արթին Սանտիկեանին եւ իր պարագաներուն:

×

Ֆ. Կ. Խաչի Սեւրանի մասնաճիւղի բոլոր ընկերուհիները եւ ընկերները իրենց խորին ցաւակցութիւնները կը յայտնեն ընկերուհի Տիկին Էլլէն Բիւզանդին իր ամուսնոյն Տօքթ. Յովհ. Քիւթիւֆեանի մահուան առթիւ:

×

Ֆ. Կ. Խաչի Պանեէօ – Քաշանի մասնաճիւղը իր ցաւակցութիւնները կը յայտնէ Տիկին Էլլէն Բիւզանդի իր ամուսնոյն Տօքթ. Յ. Քիւթիւֆեանի (Կիլիկեցի) մահուան առթիւ եւ փոխան ծաղկեպսակի երկու հազար ֆրանք կը նուիրէ Ֆ. Կ. Խաչի կայանի շէնքին, երկու հազար Փր. ալ Մշակոյթի տան: Ստանալ Յառաջէն:

×

Կապոյտ Խաչի Գոմոնի մասնաճիւղը բոլոր անդամուհիներով իրենց խորին ցաւակցութիւնները կը յայտնէ ընկերուհի Տիկին Է. Բիւզանդի իր ամուսնոյն անակնկալ եւ կսկծալի մահուան առթիւ:

×

ՍԷՆԹ ԷԹԻԷՆ — Հ. Յ. Դ. Անտուք ենթակոմիտէն եւ բոլոր ընկերները իրենց խորին ցաւակցութիւնը կը յայտնեն Տիկին Էլլէն Բիւզանդի եւ իր զաւկին, իրենց ամուսնոյն եւ հօր Տօքթ. Յ. Քիւթիւֆեանի տխուր մահուան առթիւ:









## ՆՈՒԷՐՆԵՐ

Ողբացեալ Տօքթ. Յ. Քիւթիւֆեանի մահուան առիթով իր գործընկերը իրենց խորին ցաւակցութիւնները կը յայտնեն իր այրիին՝ Տիկին Էլլէն Բիւզանդի եւ փոխան ծաղկեպսակի հետեւեալ գումարները կը նուիրեն Ֆ. Կապ. Խաչի օգափոխութեան կայանին:

Տիկին Զօլաքեան հազար ֆրանք, Տէր եւ Տիկին Աբրահամեան հազար, Տէր եւ Տիկին Գօնի հինգ հարիւր, Տէր եւ Տիկ. Գալեան հինգ հարիւր, Գաքալեան ընտանիք երեք հարիւր, Սուճուքճեան եւ Տօտաքեան հազար, Տէր եւ Տիկ. Իսմպէր հինգ հարիւր, Մէգոն Մէյէէ հազար, Տէր եւ Տիկին Տարկոսեան հինգ հարիւր, Տէր եւ Տիկին Գույումճեան հինգ հարիւր, Տէր եւ Տիկին Տէրվանեան երեք հարիւր, Այրի Տիկին Փափազեան հինգ հարիւր, Մատամ Ժան Մանտիկեան հինգ հարիւր, Տէր եւ Տիկին Մարլէն երեք հարիւր, Տէր եւ Տիկին Տօէրանքան (տէյիս) հազար, Տէր եւ Տիկին Պրէօյլ հազար, Տէր եւ Տիկին Կիւրճեան հինգ հարիւր, Այրի Տիկին Էվէն երկու հարիւր, գումար 11.100 ֆրանք:

×

Ֆ. Կ. Խաչի Մարսէյլի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացաւ Տէր եւ Տիկին Օննիկ Պէզիրճեանէ երկու հազար ֆրանք, ողբացեալ Տօքթ. Յ. Քիւթիւֆեանի մահուան առթիւ:

Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Մարսէյլի Հ. Մ. Ը. Մ.ի տարեկան պարահանդէսը Նոյեմբեր 22ին, Շաբաթ իրիկուն Օ կլուպ:

Մանրամասնութիւնները՝ յաջորդով:

